Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ԱՊՐԻԼ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1955 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Պրոֆ. Ղ. ՇԱՔԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Սեսիան քննարկեց և հաստատեց ռեսպուբլիկայի 1955 թվականի Պետական բյուջեն:

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարությամբ մեր մեծ Հայրենիքի աշխատավորները անձնվիրաբար պայքարում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյակի պլանը ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար:

Հնգամյակի անցած չորս տարում, պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներին համապատասխան, հզոր վերելք ապրեց Սովետական Միության էկոնոմիկան և կուլտուրան, է՛լ ավելի աճեց բնակչության բարեկեցությունը:

Հինգերորդ հնգամյակի պլանի հաջող կատարման գործում մեծ է սովետական բյուջեի դերը, որը հանդիսանում է սոցիալիս-

տական պետության հիմնական ֆինանսական պլանը։

ՍՍՌՄ 1955 թվականի Պետական բյուջեն ամբողջովին արտացոլում է տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, մեր երկրի տնտեսական հզորության և պաշտպանունակության ամրապնդման քաղաքականությունը, որը հետևողականորեն վարում է Սովետական կառավարությունը։

Սովետական Միության ընթացիկ տարվա բյուջեն ապահովում է ծանր արդյունաբերության հետագա զարգացումը, որը հանդիսանում է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը։ 1955 թվականի բյուջեում անհրաժեշտ ծախսեր են նախատեսված հացահատիկի արտադրությունը և անասնաբուծության արտադրանքն ավելացնելու ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի նշած միջոցառումների կենսագործման համար։

Հինգերորդ հնգամյակի տարիները բոլոր միութենական ռեսպուբլիկաներում, այդ թվում և Հայկական ՍՍՌ-ում, նշանավորվեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ և բուռն աճով։



Հնգամյակի կատարման արդյունքները անցած տարիների ընթացքում և այս տարվա ժողովրդատնտեսական պլանը ցույց են տալիս, որ Հայկական ՍՍՌ-ում հնգամյա պլանի կատարումը հաջող է ընթանում, իսկ մի քանի կարևորագույն ճյուղերի գծով հնգամյակի առաջադրանքները մեծ չափով կգերակատարվեն։

Վերջին տարիներս ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման են հանձնվել 70 նոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք հագեցված են սովետական առաջավոր տեխնիկայով։ 1954 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը 1953 թվականի համեմատությամբ ավելացավ 18 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 79,2 տոկոսով։ Արդյունաբերության զարգացման տեմպերը 1954 թվականին գերազանցեցին հնգամյա պլանով 1955 թվականի համար նախատեսված մակարդակը, ընդ որում՝ առանձնապես մեծ չափով աճեց ծանր արդյունաբերությունը։

Հայկական ՍՍՌ-ն որոշակի հաջողություններ է ձեռք բերել նաև գյուղատնտեսության ասպարեզում, որի շնորհիվ աճեցին կոլտնտեսությունների և կոլտնտեսականների դրամական-բնամթերային եկամուտները։ 1954 թվականին մանրածախ ապրանքա-

շրջանառության պլանը գերակատարվեց 4 տոկոսով։

1954 թվականին հաջողությամբ կատարվեց նաև Պետական բյուջեն ինչպես եկամուտների, այնպես էլ ծախսերի գծով։

Հայկական ՍՍՌ 1955 թվականի Պետական բյուջեն հաստատված է եկամուտների գծով՝ մեկ միլիարդ 220 միլիոն 350 հազար ռուբլի և ծախսերի գծով՝ մեկ միլիարդ 206 միլիոն 364 հազար ռուբլի։ Եկամուտների գերազանցումը ծախսերի նկատմամբ կազմում է 13,9 միլիոն ռուբլի։

Պետական բյուջեի նյութական հիմքը սոցիալիստական արտադրությունն է։ Նյութական արտադրության ոլորտում ստեղծված կուտակումները կազմում են բյուջեի եկամտային մասի գլխավոր աղբյուրը։

1955 թվականի պլանով սոցիալիստական տնտեսության ձեռնարկություններից և կազմակերպություններից ստացվող մուտքը բյուջեում կազմելու է մոտավորապես 982 միլիոն ռուբլի կամ՝ բյուջեի եկամտային մասի ավելի քան 80 տոկոսը։ Այդ գումարից շրջանառության հարկի և շահույթների մասհանումների գծով ստացվող եկամուտները կազմելու են 834 միլիոն ռուբլի։

Հինգերորդ հնգամյակի ընթացքում արտադրության աճման, աշխատանքի արտա-



դրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և տնտհաշվարկի ամրապնդման շնորհիվ բարձրացավ ձեռնարկությունների և կազմակերպությունների շահույթաբերությունը։ Ռեսպուբլիկական և տեղական ենթակայության տնտեսության շահույթների ընդհանուր գումարը նախատեսված է 472 միլիոն ռուբլի, որից 402 միլիոնը հատկացվելու է բյուջեին։ 1954 թվականի համեմատությամբ, այս տարի շահույթներից արվող մասհանումների գումարը ավելանալու է 139 միլիոն ռուբլով կամ՝ 52,5 տոկոսով։ Շահույթների անշեղ աճման և բյուջեին տրվող մասհանումների գումարների աճման շնորհիվ բարձրանում է դրանց տեսակարար կշիռը բյուջեի եկամուտների մեջ։ Այսպես, եթե 1950 թվականին դրանց տեսակարար կշիռը կազմում էր 9 տոկոս, ապա 1955 թվականին կազմելու է 32,8 տոկոս։

Հենվելով հիմնականում սոցիալիստական տնտեսության ռեսուրսների վրա, բյուջեում աննշան տեղ են գրավում բնակչության հարկային վճարումները։ 1955 թվականին հարկային վճարումների գումարը նախատեսված է 68,5 միլիոն ռուբլի, որը կազմում է բյուջեի եկամուտների միայն 5,6 տոկոսը։

Ելնելով ժողովրդական տնտեսության հե-

տագա զարգացման և երկրի պաշտպանությունն է՛լ ավելի ամրապնդելու անհրաժեշտությունից, Սովետական կառավարությունն ընթացիկ տարում ավելացրել է բնակչության մեջ իրացվող փոխառություններից ստացվող մուտքերի գումարը։ Այդ պատճառով էլ ռեսպուբլիկայի 1955 թվականի բյուջեում, 1954 թվականի համեմատությամբ, փոխառություններից ստացվող գումարը կավելանա, որը նախատեսված է 83,7 միլիոն ռուբլի։

1955 թվականին բյուջետային ռեսուրսների հիմնական մասը հատկացվելու է ժողովրդական տնտեսության զարգացման և սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների ֆինանսավորմանը։

Ընթացիկ տարվա բյուջեի ծախսային ամբողջ մասի ավելի քան 90 տոկոսը հատկացվելու է հիշյալ նպատակներին։

1955 թվականի պլանով՝ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար ծախսերը կազմելու են 543 միլիոն 98 հազար ռուբլի։ Հիշյալ ծախսերից արդյունաբերության համար օգտագործվելու է 197,6 միլիոն ռուբլի, այդ թվում բյուջեի հաշվին՝ 52,6 միլիոն ռուբլի, գյուղատնտեսության համար (ներառյալ ջրային տնտեսությունը)՝ 120,6 միլիոն ռուբլի, որից բյուջեի հաշվին՝ 92,8



միլիոն ռուբլի։ Բացի դրանից, այս տարի կոլտնտեսություններին բաց է թողնվելու 28 միլիոն ռուբլու երկարատև վարկ։

1955 թվականին խոշոր հատկացումներ է նախատեսված ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ընդլայնելու, դրանց որակը բարելավելու, առևտրական կազմակերպությունների ցանցն ընդարձակելու և բնակարանա-կոմունալ տնտեսության համար։ Վերոհիշյալ նպատակներով կատարվող ծախսերի ընդհանուր գումարը նախատեսված է 271 միլիոն ռուբլի, որից բյուջեի հաշվին՝ մոտավորապես 124 միլիոն ռուբլի։

1955 թվականի ժողովրդատնտեսական պլանին համապատասխան, նախատեսված է սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար բյուջեից հատկացնել 808,5 միլիոն ռուբլի, որը կազմում է բյուջեի ընդհանուր ծավալի 67,3 տոկոսը։ Սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման հատկացումներն այս տարի 1950 թվականի համեմատությամբ ավելանում են ավելի քան 100 միլիոն ռուբլով։ Լուսավորության և կուլտուրայի համար ծախսվելու է մոտ 534 միլիոն ռուբլի, որից ընդհանուր ուսուցման դպրոցների համար՝ 253 միլիոն ռուբ-

լի, կադրերի պատրաստման համար՝ 95,7 միլիոն ռուբլի և գիտության հետագա զարգացման համար՝ 59 միլիոն ռուբլի։ 1955 թվականին Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներում անցում է կատարվելու յոթնամյա ուսուցումից՝ ընդհանուր միջնակարգ պարտադիր կրթության։ Առողջապահության և ֆիզկուլտուրայի վրա ծախսվելու է ավելի քան 197 միլիոն ռուբլի, իսկ սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության վրա՝ ավելի քան 73 միլիոն ռուբլի։

Պարտիայի և կառավարության ցուցումներով, պետական ապարատի աշխատանքի բարելավման նպատակով, վերջին ժամանակներս մի շարք միջոցառումներ կիրառվեցին վարչա-կառավարչական ապարատի պարզեցման և կրճատման ուղղությամբ։ 1954 թվականին կառավարման ծախսերը 1953 թվականի համեմատությամբ կրճատվեցին 12 միլիոն ռուբլով, 1955 թվականին այդ ծախսերը կրճատվելու են երկու միլիոն ռուբլով ևս, կազմելով ընդամենը 75 միլիոն ռուբլի։

1955 թվականի Պետական բյուջեում իր արտացոլումն է գտել տեղական բյուջեների հետագա զարգացումը։ Տեղական բյուջեներ-



րը հաստատվել են 617 միլիոն 842 հազար ռուբլու գումարով, որը կազմում է ամբողջ բյուջեի 51,2 տոկոսը։

Քանի որ 1955 թվականի Պետական բյուջեն հինգերորդ հնգամյակի ավարտական տարվա բյուջեն է, հետաքրքիր կլինի որոշ հանրագումարային ամփոփումներ կատարել։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության աճին զուգակցել է պետական բյուջեի աճը։

Հայկական ՍՍՌ Պետական բյուջեի ընդհանուր ծավալը հինգերորդ հնգամյակում կկազմի 6.082 միլիոն ռուբլի։ Սա ցույց է տալիս, որ բյուջեն չորրորդ հնգամյակի համեմատությամբ ավելանում է գրեթե 740 միլիոն ռուբլով։ Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման ծախսերը կհասնեն 1.803 միլիոն ռուբլու, սոցիալ-կուլտուրական միջոցառումներինը՝ 3.707 միլիոն ռուբլու, իսկ ընդամենը 5.510 միլիոն ռուբլու կամ բյուջեի ընդհանուր ծավալի 90 տոկոսը։ Չորրորդ հնգամյակի համեմատությամբ հինգերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության ֆինանսավորման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար հատկացվող ծախսերը աճում են 635 միլիոն ռուբլով։

Պետական բյուջեից բացի, Հայկական ՍՍՌ-ում խոշոր ծախսեր են կատարվելու նաև միութենական բյուջեի հաշվին՝ միութենական ենթակայության ձեռնարկությունների և կազմակերպությունների գծով։ Բավական է ասել, որ հինգերորդ հնգամյակի չորս տարում միութենական բյուջեի միջոցներից սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար ներդրվել է ավելի քան 900 միլիոն ռուբլի։

1955 թվականի Պետական բյուջեի հաջող կատարումն ամբողջովին կախված է ձեռնարկությունների և կազմակերպությունների կողմից արտադրանքի թողարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման սահմանված առաջադրանքների կատարումից։

1955 թվականի ժողովրդատնտեսական պլանի և Պետական բյուջեի հաջող կատարումը կապահովի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանի ավարտումը, որը մի նոր ավանդ կհանդիսանա կոմունիստական շինարարության գործում։

---

# ԶՐՈՒՅՑ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

Մեր սոցիալիստական Հայրենիքի ժողովրդական տնտեսության զարգացման գործում առաջնակարգ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որը հանդիսանում է հասարակական հարստության հիմնական աղբյուրը։ «Աշխատանքի արտադրողականությունը,— սովորեցնում է մեզ մեծ Լենինը,— վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նախատեսված է 1951—1955 թվականների ընթացքում բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը՝ արդյունաբերության մեջ մոտավորապես 50, իսկ շինարարության մեջ՝ 55 տոկոսով։ Մեր ժողովրդի նյութական դրության անընդհատ բարելավումը պահանջում է միշտ բարձրաց-

նել ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը։ Արդյունաբերական արտադրանքի աճը մեզ մոտ հիմնականում կատարվում է ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Հետպատերազմյան տարիներին աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ մեր երկրում յոթ անգամ կատարվեց ժողովրդական սպառման առարկաների գների իջեցում, որը և բնականաբար բարձրացնում է աշխատավորների ռեալ աշխատավարձը, բարելավում նրանց նյութական բարեկեցությունը։

Ինչքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, այնքան քիչ բանվորական ժամանակ է ծախսվում հասարակայնորեն անհրաժեշտ այս կամ այն արտադրանքի միավորի արտադրության համար և դրանով իսկ հնարավորություն է ստեղծում արտադրել նոր միավորներ։

Մեր արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացումը արդյունք է արտադրության մեջ առաջավոր փորձի, նոր տեխնիկայի ներդրման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ու էլեկտրիֆիկացման, սոցիալիստական մրցման ծավալման, արտադրության մեջ աշխա-



տող ինժեներա-տեխնիկական կազմի, բանվորների որակավորման բարձրացման և այլն։

Մեր հայրենական արտադրության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցը զուգակցվում է նաև աշխատանքի պայմանների լավացման, աշխատատար պրոցեսների հեշտացման, բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների հանգստի կազմակերպման հետ։

Վերոհիշյալ միջոցառումները թեթևացնում և դյուրին են դարձնում բանվորի աշխատանքը, տնտեսում աշխատաժամանակը։ Այդ է պատճառը, որ մեր հասարակարգում բանվորները սիրով և հաճույքով ընդունում են նոր մեքենաների գործադրումը և ամեն կերպ իրենց ռացիոնալիզատորական առաջարկություններով ձգտում են բարձրացնել նրանց արտադրողականությունը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի արտադրության մեջ նոր և առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրումը, արտադրության ճիշտ և արդյունավետ կազմակերպումը, առանց որի անհնարին է աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որովհետև սոցիալիստական արտադրությունը միայն ու միայն կարող է զար-

գանալ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա։

Երևանի Ավտոդողերի գործարանը մեր ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկություններից մեկն է։ Այստեղ զգալի աշխատանք է կատարվել արտադրության մեջ նոր կարողություններ արմատավորելու ուղղությամբ։ 1953—54 թվականների ընթացքում գործարանում գործադրվել են մի շարք մեքենաներ։ Այսպես, օրինակ, նոր մեքենաների և մեխանիզմների գործադրման հետևանքով գործարանի հզորությունը 1952 թվականի համեմատությամբ 1954 թվականի վերջին ավելացել է 35 տոկոսով։ Մի շարք ապարատների փոփոխման հետևանքով «Պոլիվինիլացետատ» գործարանի 01 ցեխի կարողությունը բարձրացել է 35—40 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոններից մեկը հանդիսանում է բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից արված ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումը արտադրության մեջ։ Այս տեսակետից Երևանի Կիրովի անվան, «Պոլիվինիլացետատ» և մի շարք ուրիշ գործարաններ հասել են լուրջ հաջողությունների։

Կիրովի անվան գործարանում 5-րդ հնգամյակի տարիներին բանվորների և ինժե-



ներա-տեխնիկական աշխատողների կողմից արվել է 3470 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից 2650-ը ներդրվել է արտադրության մեջ։ Այդ նորարարական առաջարկությունների ներդրման շնորհիվ գործարանը տարեկան 24 միլիոն ռուբլու օգուտ է ստանում։

1953—54 թվականների ընթացքում Ավտոդողերի գործարանում բանվոր-ծառայողների կողմից ստացվել են 166 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից ընդունված է 136-ը։ Արտադրության մեջ ներդրված է 116 նորարարական առաջարկություն։ Այս առաջարկությունների արմատավորման շնորհիվ գործարանը տարեկան ստանում է ավելի քան 458 հազար ռուբլու օգուտ։

Երևանի Կոմպրեսորների գործարանը 1953 թվականի ընթացքում չէր կատարում իր արտադրական պլանները։ Պարտիական կազմակերպությունը և դիրեկցիան ձեռք առան մի շարք միջոցառումներ գործարանի աշխատանքի բարելավման ուղղությամբ։ Գործարանի ձուլման ցեխը հանդիսանում էր ամենանեղ տեղը, որովհետև այնտեղ խոտանը մեծ տոկոս էր կազմում։ Բավական է ասել, որ 1954 թվականի փետրվարին ձուլվածքի խոտանը միայն մխոցների արտադրության գծով կազմում էր մոտ 49 տոկոս։

Լուրջ և խոր կերպով ուսումնասիրելով խոտան առաջացնող պատճառները, ձուլման ցեխի վարպետ Մուշեղյանը նոր ռացիոնալիզատորական առաջարկություն մտցրեց մրխոցների ձուլման ուղղությամբ, որը զգալի չափով իջեցրեց խոտանը։

Արտադրության մեջ աշխատող շարքային և ղեկավար կադրերի տեխնիկական լավ պատրաստականությունը, նրանց հմտությունն ու գործիմացությունը վճռական նշանակություն ունեն աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Այդ է պատճառը, որ պարտիան և կառավարությունը միջոցներ չեն խնայում ժողովրդական տնտեսության մեջ աշխատող մեր կադրերի որակավորումը բարձրացնելու ուղղությամբ։

Երևանի Ստալինյան ռայոնում ամեն տարի հազարավոր մարդիկ իրենց պատրաստականությունը բարձրացնում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատություններում և զանազան կուրսերում, որը հնարավորություն է տալիս նրանց ավելի արդյունավետ օգտագործելու արտադրության մեջ ներդրված ժամանակակից մեխանիզմները։

Այսպես, օրինակ, Կիրովի անվան գործարանի բանվորներից այժմ առանց արտադրու-



թյունից կտրվելու բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 28 հոգի, տեխնիկումներում 64, իսկ բաներիտ և հերթափոխային միջնակարգ դպրոցներում՝ 150 հոգի։ Ավտոդողերի գործարանից՝ 60 բանվոր-ծառայողներ սովորում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դըպրոցներում։ «Պոլիվինիլացետատ» գործարանի բանվոր-ծառայողներից 7 հոգի սովորում են ասպիրանտուրայում, 30 հոգի՝ բարձրագույն ուսումնական հաստատություններում, 33 հոգի՝ տեխնիկումներում, 115 հոգի՝ բաներիտ դպրոցներում։ Գործարանի ներսում այս տարի բանվոր-ծառայողների համար բացվել և գործում է հերթափոխային միջնակարգ դպրոց։

Ռայոնի բանվոր-ծառայողների համար ուսման դարբնոց են ոչ միայն բարձրագույն ուսումնական հաստատությունները, տեխնիկումները և բաներիտ դպրոցները, այլև հենց այն գործարաններն ու ֆաբրիկաները, որտեղ նրանք աշխատում են։ Գործարաններում և ֆաբրիկաներում հաջողությամբ գործում են տեխնիկական խմբակները, որտեղ նրանք տիրապետում են տեխնիկայի հիմունքներին։ Այսպես, օրինակ, Ավտոդողերի գործարանում 1954 թվականի ընթացքում 328 բանվորներ և ծառայողներ բարձրացրել են իրենց

որակավորումը՝ կազմակերպված տեխնիկական ուսուցման խմբակներում։ «Պոլիվինիլացետատ» գործարանի տեխնիկական ուսուցման խմբակներում ընդգրկված են 256 բանվոր-ծառայողներ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կարևորագույն նշանակություն ունի սոցիալիստական մրցությունը։ Մտնելով սոցմրցության մեջ, բանվոր-ծառայողներն ստանձնում են կոնկրետ պարտավորություններ արտադրական պլանները գերակատարելու, արտադրանքի որակը բարձրացնելու, ինքնարժեքը իջեցնելու, հումք և նյութեղեն տնտեսելու, ներքին ռեսուրսները լրիվ օգտագործելու համար։

«Պոլիվինիլացետատ» գործարանի բանվոր-ծառայողները ծավալելով ստեղծարար սոցիալիստական մրցություն, 1954 թվականի վերջին հասան այն բանին, որ նախորդ տարվա համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացրին 33,7 տոկոսով, տնտեսեցին 3 միլիոն 119 հազար ռուբլու հումք, 337 հազար կվ.-ժամ էլեկտրաէներգիա և 591 տոննա վառելանյութ։

Այժմ ռայոնի գործարաններն ու ֆաբրիկաները պայքարում են 5-րդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Երեսունհինգ տարի առաջ, 1920 թվականի ապրիլի 28-ին, Ադրբեջանի բանվորները և աշխատավոր գյուղացիությունը, ռուս մեծ ժողովրդի, հերոսական 11-րդ բանակի օգնությամբ, հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տապալեցին բուրժուակալվածատիրական մուսավաթիստական ատելի ռեժիմը և հաստատեցին սովետական իշխանություն։

Ադրբեջանի աշխատավորները 35 տարի է, ՍՍՌՄ ժողովուրդների համերաշխ ընտանիքում, նրանց եղբայրական համագործակցությամբ և փոխադարձ օգնությամբ, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անձնվիրաբար պայքարում են ռեսպուբլիկայի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման համար։ Նախկինում ամենահետամնաց ֆեոդալական-նահապետական երկրից Սովետական իշխանության տարիներին Ադրբեջանը դարձավ հզոր ինդուստրիայի, առաջավոր կոլտնտեսային գյուղատնտեսության և զարգացած կուլտուրայի երկիր։

Այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը՝

✪ Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում ստեղծվեցին քիմիական, մեքենաշինական,

էներգետիկայի, մետալուրգիական, քիմիահանքային, խողովակագլանման, տեքստիլ, սննդի արդյունաբերության նոր ճյուղեր։

✪ Սովետական Ադրբեջանի արդյունաբերությունը 1954 թվականին համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարել է 101 տոկոսով։ 1954 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 8 տոկոսով։ Արտադրանքի ինքնարժեքը իջել է համարյա 2,5 տոկոսով։

✪ Նավթարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները 1954 թվականի արտադրական պլանը կատարել են 102 տոկոսով։ Ավտոմոբիլային տրանսպորտի և խճուղիների մինիստրության արդյունաբերական ձեռնարկությունները՝ 109 տոկոսով։

✪ Շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները 1954 թվականի արտադրական պլանը կատարել են 105 տոկոսով, տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ 106 տոկոսով, քաղաքային և գյուղական շինարարության մինիստրության ձեռնարկությունները՝ 103 տոկոսով և այլն։

✪ Լայն սպառման ապրանքների արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները 1954 թվականի արտադրական պլանը կատարել են 100,5 տոկոսով, պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ 102 տոկոսով,



ձկնարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ 117 տոկոսով։

✪ 1954 թվականին բամբակի զտման պլանը կատարվել է 102 տոկոսով, կոշկեղենինը՝ 102 տոկոսով, ձկնամթերքներինը՝ 140 տոկոսով, պահածոներինը՝ 105 տոկոսով, թեյինը՝ 104 տոկոսով, հրուշակեղենինը՝ 101 տոկոսով և այլն։

✪ 1955 թվականի պետական բյուջեով նախատեսվում է ժողովրդական տնտեսության զարգացման համար հատկացնել 688 միլիոն ռուբլի, որից արդյունաբերության զարգացմանը հատկացվում է 282,6 միլիոն ռուբլի, այդ թվում՝ նավթարդյունաբերությանը՝ 207,3 միլիոն ռուբլի։

✪ 1955 թվականին նախատեսվում է ավարտել Բաքվի նավանորոգման գործարանի, Կաշեգործարանի, Սառույցի գործարանի, Կաթնակոմբինատի, Աղդամի և Աղստաֆայի յուղի, կաթի գործարանների, Մասալլի թեյի ֆաբրիկայի, Նուխիի ներկարարական ֆաբրիկայի շինարարությունները։

✪ 1955 թվականին պետք է ավարտվի Օրջոնիկիձեի և Լենինի անվան Տեքստիլ կոմբինատների և այլ ձեռնարկությունների վերակառուցումն ու ընդարձակումը։ Միութենական բյուջեից խոշոր միջոցներ են տրվում Դաշքյասանում խողովակագլանման գործարանի և մի շարք այլ կարևոր օբյեկտներ կառուցելու համար։

✪ Խոշոր հաջողությունների է հասել նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ 1954 թվականին նա-

խորդ տարվա համեմատությամբ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները ավելացել են 19,9 հազար հեկտարով, այդ թվում հացահատիկային և հատիկա-լոբազգի կուլտուրաներինը՝ 4,6 հազար հեկտարով, տեխնիկական կուլտուրաներինը՝ 5,1 հազար հեկտարով, որից միայն բամբակի ցանքերինը՝ 2,2 հազար հեկտարով։ 1954 թվականին 2 անգամ պտղատու և 2,6 անգամ խաղողի այգիներ ավելի են տնկվել, քան 1953 թվականին։

✪ Չորս տարի առաջ Սովետական Ադրբեջանում կար 77 մեքենա-տրակտորային կայան, իսկ այժմ այդ թիվը հասնում է 112-ի։ ՄՏ կայաններն ունեն 12 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), որից 5 հազարը ստացվել է վերջին չորս տարիների ընթացքում։ Այդ նույն ժամանակաշրջանում կոմբայնների թիվն ավելացել է 3,5 անգամ, գյուղատնտեսական մյուս տեսակի մեքենաների մեխանիզմների քանակն ավելացել է 2 անգամ։ Այս տարի նոր կկազմակերպվի 5 ՄՏ կայան։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի 10—12 տոկոսով կավելանա տրակտորային աշխատանքների ծավալը։

✪ 1954 թվականին ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանները կոլտնտեսությունների համար մեկ միլիոն 367 հազար հեկտարով ավել աշխատանք են կատարել, քան 1951 թվականին։ Վերջին երեք տարվա ընթացքում գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը աճել է 43,5 տոկոսով։



✪ Անցյալ տարի գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների բերքատվությունը գերազանցեց 1953 թվականի մակարդակը։ Հացահատիկի հանձնման պետական պլանը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները կատարել են 109,8 տոկոսով, պետությանը հանձնել են 3,3 միլիոն փութ ավելի հացահատիկ, քան 1953 թվականին։

✪ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները բամբակի հումքի հանձնման պետական պլանը կատարել են 104,8 տոկոսով, որը 1950 թվականի համեմատությամբ 1,3 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ 2,6 անգամ ավելի է։ 1954 թվականի խաղողի հանձնման պետական պլանը կատարվել է 115,4 տոկոսով, կորիզավոր և հնդավոր պտուղներինը՝ 105 տոկոսով, կարտոֆիլի, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 103—118 տոկոսով և այլն։

✪ Զգալի չափով բարձրացել են կոլտնտեսությունների եկամուտները։ 1940 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1954 թվականին ստացել են մոտ մեկ ու կես միլիարդ ռուբլի ավելի եկամուտ։ Միայն 1954 թվականին հանձնած բամբակի հումքի դիմաց կոլտնտեսությունները պետությունից ստացել են մեկ միլիարդ 300 միլիոն ռուբլի։

✪ 1955 թվականին ընդարձակվելու են բամբակի ցանքատարածությունները և զգալիորեն բարձրանալու է բերքատվությունը։ 20—25 տոկոսով ավելանալու է

*կարտոֆիլի և բանջարեղենի ցանքը և 5 հազար հեկտարով խաղողի և պտղատու այգիները։*

✪ *Գյուղատնտեսության զարգացման համար, կոլտնտեսություններին զոոտեխնիկական անասնաբուժական և ագրոտեխնիկական օգնություն ցույց տալու նպատակով, 1955 թվականին պետական բյուջեով հատկացված է 218,6 միլիոն ռուբլի։ Բացի դրանից, մեքենա-տրակտորային կայանների պահպանման ու կապիտալ շինարարության համար միութենական բյուջեից հատկացված է մոտ 260 միլիոն ռուբլի։*

✪ *Մինչև Սովետական կարգերի հաստատումը Ադրբեջանում ազգաբնակչության 90 տոկոսը անգրագետ էր, իսկ այժմ Սովետական Ադրբեջանը դարձել է համատարած գրագիտության երկիր։ Միայն անցյալ տարի միջնակարգ դպրոցների թիվը ավելացավ 122 միավորով։*

✪ *Բանվորական և գյուղական երիտասարդության հանրակրթական գիշերային դպրոցներում սովորողների թիվը, նախորդ ուսումնական տարվա համեմատությամբ, ավելացել է 7 տոկոսով։*

✪ *Նախասովետական Ադրբեջանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն։ Այժմ ռեսպուբլիկայի 8 քաղաքներում գործում է 19 բարձրագույն ուսումնական հաստատություն։ Բուհերում սովորողների թիվը անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ ավելացել է 8 տոկոսով։*

✪ *1954 թվականին ռեսպուբլիկայի բարձրագույն*



*և միջնակարգ մասնագիտական հաստատությունները երկրին տվեցին 10 հազար երիտասարդ մասնագետներ։*

✪ *Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են ավելի քան 4500 կուլտուր-լուսավորական հիմնարկներ։ Վերջին չորս տարում գրադարանների գրքային ֆոնդը ավելացել է մոտ 70 տոկոսով, իսկ ընթերցողների թիվը համարյա 4 անգամ։*

✪ *1954 թվականին ռեսպուբլիկայում հրատարակվել է 6 միլիոն 889 հազար օրինակ ընդհանուր տիրաժով գիրք, մեկ միլիոն 588 հազար օրինակով ավելի, քան 1951 թվականին։*

---

# ԿԱՆԽԵԼ ԱՏՈՄԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍՊԱՌՆԱԼԻՔԸ

Մ. ԿՈՏՈՎ

Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի պատասխանատու քարտուղար

*Խաղաղություն,— այս բառն է այժմ հընչում աշխարհի բոլոր անկյուններում, բոլոր լեզուներով։ Այդ բառի մեջ իր արտահայտությունն է գտնում մարդկության ճնշող մեծամասնության ձգտումը՝ պահպանել խաղաղությունը ժողովուրդների միջև և կանխել նոր պատերազմի սպառնալիքը։*

*Խաղաղության կողմնակիցների շարժումն այժմ դարձել է միջազգային ամբողջ կյանքի գործուն ուժը, կարևորագույն գործոնը։ Այդ շարժման շարքերում են ընդգրկված բոլոր երկրների բնակչության ամենալայն խավերը՝ բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան, տարբեր ազգությունների պատկանող, տարբեր քաղաքական և կրոնական հայացքներ ունեցող մարդիկ։*

*Խաղաղության կողմնակիցների շարժումը*



*այդպիսի մասսայական բնույթ է ստացել հենց այն պատճառով, որ իմպերիալիստական պետությունների և ամենից առաջ համաշխարհային տիրապետության ձգտող Ամերիկայի Միացյալ Նահանգների ագրեսիվ քաղաքականությունը լուրջ վտանգ է սպառնում խաղաղությանը և ժողովուրդների անվտանգությանը։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները սպառազինության կատաղի մրցավազք են սկսել, ստեղծում են խաղաղասեր ժողովուրդների դեմ ուղղված ամեն տեսակ ագրեսիվ բլոկներ ու խմբավորումներ, ամբողջ աշխարհը պատել են ռազմական բազաների խիտ ցանցով, բացահայտորեն կոչ են անում սանձազերծել նոր պատերազմը, սպառնալով ատոմային զենք գործադրել այդ պատերազմում։*

*Այդպիսի պայմաններում հինգ մայր ցամաքների բարի կամքի տեր մարդիկ միավորում են իրենց ջանքերը պատերազմի հրձիգներին հակահարված տալու համար։ Խաղաղության կողմնակիցների շարժման բնորոշ գիծը ներկա էտապում այն է, որ անչափ աճել են խաղաղության պաշտպանության համար ժողովրդական մասսաների ելույթները։*

*Միլիոնավոր մարդկանց խաղաղության ակտիվ կամքի շնորհիվ էլ հենց ձեռք բեր-*

վեց զինադադարը Կորեայում և ռազմական գործողությունների դադարեցումը Հնդկաչինում։

Խաղաղության կողմնակիցները առանձնահատուկ ուժով պայքար են մղում արևմտագերմանական միլիտարիզմի վերածնման դեմ, խաղաղության գործին լուրջ սպառնալիք ներկայացնող Փարիզյան համաձայնագրերի դեմ։ Խաղաղության կողմնակիցներն արդեն մեկ անգամ տապալեցին այսպես կոչված «եվրոպական պաշտպանական միավորման» վերաբերյալ պայմանագիրը։ Այժմ աշխարհի ժողովուրդները և ամենից առաջ եվրոպական ժողովուրդները բոլոր ուժերով ձգտում են խափանել փարիզյան համաձայնագրերը, որոնց նպատակն է վերածնել գերմանական վերմախտը։

Սովետական Միության և խաղաղության ու դեմոկրատիայի ամբողջ ճամբարի հաստատակամ ջանքերի շնորհիվ վերջին ժամանակներս նշմարվեց միջազգային հարաբերությունների լարվածության որոշ թուլացում։ Սակայն ԱՄՆ-ի կառավարող շրջանները շարունակում են վարել «ուժի դիրքերից ելնող» քաղաքականություն։

Նոր պատերազմի քարոզիչները բացեիբաց արտահայտում են ատոմային պատերազմ սանձազերծելու իրենց ձգտումը։ Ինչ-



պես հայտնի է, Հյուսիս-ատլանտյան բլոկի (ՆԱՏՕ) փարիզյան սեսիայում, որը կայացավ անցյալ տարվա դեկտեմբերի կեսերին, որոշում ընդունվեց Եվրոպայում ատոմային պատերազմ նախապատրաստելու մասին։

Այս տարվա հունվարի սկզբներին Կոնգրեսին ուղարկած ուղերձում ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը հայտարարեց, որ ԱՄՆ-ի բյուջեում շեշտը դրվում է զենքի նոր տեսակների, առանձնապես կործանիչ մեծ ուժի զենքի օգտագործման վրա։ Ընդսմին Էյզենհաուերը նշեց, որ ԱՄՆ-ը պետք է ընդլայնի ատոմային զենքի արտադրությունը իր ցամաքային և ռազմա-ծովային ուժերի համար։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի իմպերիալիստներն ուժեղացնում են սպառազինության մրցավազքը և ձգտում են ստիպել հասարակական կարծիքին հաշտվելու այն մտքի հետ, թե ատոմային պատերազմն անխուսափելի է։

Ընդ որում՝ ժողովուրդներին խաբելու և հասարակական կարծիքը շփոթության մեջ գցելու համար, ԱՄՆ-ի ղեկավարները փորձելով խաղաղասիրական հայտարարություններով քողարկել իրենց ագրեսիվ գործողությունները, ձգտում են ժողովուրդների աչքում միջազգային լարվածության մեղավոր-

ներ ներկայացնել Սովետական Միությանը և ժողովրդական դեմոկրատիայի երկրներին։

Սակայն ժողովուրդներին չի կարելի խաբել, նրանք սկսում են ավելի ու ավելի հասկանալ, թե որտեղից է գալիս ատոմային պատերազմի սանձազերծման սպառնալիքը։ Հենց այդ պատճառով էլ օրեցօր բոլոր երկրներում աճում է միլիոնավոր մարդկանց շարժումը ԱՄՆ-ի ռեակցիոն քաղաքականության դեմ, որն աշխարհին ատոմային պատերազմ է սպառնում։

Այս տարվա հունվարի 18—19-ին, Վիեննայում կայացած Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բյուրոյի ընդլայնված նիստը որոշեց համաշխարհային կամպանիա անցկացնել ատոմային պատերազմի նախապատրաստման դեմ։

«Ներկայումս,— ասված է Խաղաղության Համաշխարհային Խորհրդի՝ աշխարհի ժողովուրդներին ուղղված Դիմումի մեջ,— որոշ կառավարություններ պատրաստվում են սանձազերծել ատոմային պատերազմը։ Նրանք կամենում են ժողովուրդներին ներշնչել այն միտքը, թե ատոմային պատերազմն անխուսափելի է։ Ատոմային զենքի գործադրումը կհանգեցներ բնաջնջող պատերազմի։ Մենք հայտարարում ենք՝ այն կառավարությունը, որը կսանձազերծի ատոմային պա-



տերազմը, կզրկվի իր ժողովրդի վստահությունից և կդատապարտվի բոլոր ժողովուրդների կողմից։ Մենք հանդես ենք գալիս նրանց դեմ, ովքեր ատոմային պատերազմ են նախապատրաստում։ Մենք պահանջում ենք, որ բոլոր երկրներում ոչնչացվեն ատոմային զենքի պաշարները և անհապաղ դադարեցվի նրա արտադրությունը»։

Այդ Դիմումի հուզիչ խոսքերը ջերմ արձագանք գտան տարբեր երկրների միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց սրտերում։ Բարի կամքի հարյուր միլիոնավոր մարդիկ արդեն իրենց ստորագրություններն են դրել այդ Դիմումի տակ։

Եվրոպայի երկրներում ատոմային զենքի արգելման համար ստորագրությունների հավաքմանը սերտորեն ուղեկցում է Փարիզյան համաձայնագրերի դեմ, գերմանական վերմախտի վերածնման դեմ ուղղված շարժումը։ Այդ շարժման մեջ ակտիվ դեր է խաղում Ֆրանսիայի ժողովուրդը և, ամենից առաջ, նրա բանվոր դասակարգը։ Առաջիկայում Ֆրանսիայում տեղի է ունենալու խաղաղասիրական ուժերի ազգային ասամբլեա, որն անցնելու է Գերմանիայի վերազինման դեմ, ատոմային պատերազմի նախապատրաստման դեմ պայքարելու լոզունգով։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի

Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան հաջողությամբ է ծավալվում Իտալիայում։ Երկրի շատ քաղաքների կոմունալ խորհուրդները ընդունել են բանաձևեր, պահանջելով ոչնչացնել ատոմային ու ջրածնային ռումբերի պաշարները և արգելել դրանց արտադրությունը։ Կալյարիայի (Սարդինիա) նահանգի կոոպերատորների 300 դելեգատները, որոնք ներկայացնում էին 133 կոոպերատիվ, ստորագրեցին Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։ Միլանում կարճ ժամանակամիջոցում հավաքվեց 70 հազար ստորագրություն։

Ատոմային զենքի արգելման շարժումը ավելի ու ավելի մասսայական բնույթ է ստանում Անգլիայում։ Ինչպես հայտնի է, Անգլիան ԱՄՆ-ի կողմից օգտագործվում է որպես «չսուզվող ավիակիր» ամերիկյան ատոմային ռմբակոծիչների համար։ Հասարակ անգլիացիները սկսում են հասկանալ, թե իրենց երկրի համար ինչպիսի սպառնալիք է հանդիսանում ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող դասակարգերի քաղաքականությունը։

Խաղաղության Պաշտպանության անգլիական Կոմիտեի և Անգլիայի դեմոկրատական մյուս կազմակերպությունների նախաձեռնությամբ շուտով կսկսվի ատոմային զենքի արգելման համար ստորագրությունների հա-



վաքման կամպանիան։ Նախատեսվում է ամբողջ երկրում անցկացնել խաղաղության կողմնակիցների մոտ 5 հազար միտինգ։

Խաղաղության կողմնակիցները Արևմտյան Գերմանիայում ուժեղացնում են պայքարը արևմտա-գերմանական միլիտարիստների ձեռքը ատոմային զենք հանձնելու ամերիկյան պլանների կենսագործման դեմ։ Արևմտյան Գերմանիայի պրոֆմիության 6 միլիոն անդամներ փարիզյան համաձայնագրերի վավերացման դեմ արտահայտվեցին։ Արևմտյան Գերմանիայի քաղաքներում և գյուղերում տեղի են ունենում մասսայական ելույթներ, միտինգներ և ցույցեր Գերմանիայի խաղաղ միավորման համար։ Վերջերս տեղի ունեցավ Ռուրի մետաղագործների և հանքագործների 24-ժամյա գործադուլ ընդդեմ փարիզյան համաձայնագրերի և երկրի միլիտարացման։

Ոստիկանական հալածանքների, ռազմական հիստերիայի և ատոմային պատերազմի սարսափներով ահաբեկելու իրադրության մեջ խաղաղության շարժումը ծավալվում է նաև Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ Ատոմային զենքն արգելելու, ատոմային և ջրածնային ռումբերի եղած բոլոր պաշարները ոչնչացնելու օգտին հանդես են գալիս այնպիսի կազմակերպություններ, ինչպիսիք են

«Ամերիկացիների արշավանքը հանուն խաղաղության» կազմակերպությունը, ԱՄՆ-ի պրոգրեսիվ պարտիան և խաղաղության համար պայքարողների այլ կազմակերպություններ։

Ատոմային պատերազմի սպառնալիքի դեմ ժողովուրդների հզոր շարժումը իսկական համաժողովրդական բնույթ է ստանում Ասիայի երկրներում։ Օրինակ՝ Յապոնիայում ատոմային զենքն անհապաղ արգելելու պետիցիան ստորագրել է ավելի քան 20 միլիոն մարդ։ Համեմատության համար պետք է հիշել, որ Ստոկհոլմի Կոչի տակ Յապոնիայում հավաքվել էր 6 միլիոն ստորագրություն։

Յապոնական ժողովուրդը, որը դարձավ ամերիկյան ատոմամոլների առաջին զոհը, չի ցանկանում, որ կրկնվեն նմանօրինակ բարբարոսական էքսպերիմենտները։ Պառլամենտի երկու պալատներն էլ, 46 պրեֆեկտուրաներ, քաղաքային և գյուղական ավելի քան 250 համայնքային խորհուրդներ ընդունել են որոշումներ, պահանջելով արգելել մասսայական ոչնչացման զենքը։

Հնդկաստանում նույնպես ծավալվում է ատոմային զենքի արգելման լայն կամպանիան, որն սկսվել է Խաղաղության Համաշխարհային Խորհրդի նախաձեռնությամբ։ Ատոմային պատերազմի դեմ խաղաղության



կողմնակիցների կոնֆերանսներ տեղի ունեցան Արևմտյան Բենգալիայում, Փենջաբում, Դեպսում, Ուտեր-Պրադեշում, Դելիում և շատ այլ նահանգներում։ Ատոմային զենքի արգելման դեմ հանդես եկավ «Կիսան Սաբխա» կազմակերպությունը, որն իր շարքերում միավորում է բազմամիլիոն հնդիկ գյուղացիների։ Հնդկաստանի մի շարք նահանգներում և քաղաքներում արդեն հարյուր հազարավոր ստորագրություններ է հավաքվել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։

Պատերազմի սանձազերծման դեմ ժողովուրդների ծավալած կամպանիան ակտիվորեն պաշտպանում են պրոգրեսիվ կազմակերպությունները, որոնք իրենց շարքերում ընդգրկում են տասնյակ միլիոնավոր մարդկանց։ Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան, Ժուռնալիստների համաշխարհային դեմոկրատական կազմակերպությունը, Կանանց համաշխարհային դեմոկրատական ֆեդերացիան և Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան արդեն հայտարարել են, որ իրենք պաշտպանում են Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի որոշումները ջերմ արձագանք և պաշտպա-

նություն գտան սոցիալիզմի և դեմոկրատիայի երկրներում։ Ստորագրությունների հավաքումը հաջողությամբ է ընթանում Չինաստանում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Ռումինիայում, Հունգարիայում, Բուլղարիայում, Ալբանիայում, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայում և Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում։ Չինաստանում արդեն հավաքվել է 200 միլիոնից ավելի ստորագրություն։

Խաղաղության կողմնակիցների հզոր շարժման առաջին շարքերում է ընթանում սովետական ժողովուրդը։

Սովետական մարդիկ ջերմորեն հավանություն են տալիս իրենց կառավարության խաղաղասիրական քաղաքականությանը, որն ուղղված է բոլոր ժողովուրդների միջև խաղաղությունն ու բարեկամությունն ամրապնդելու նպատակին։ Նրանք հաստատակամությամբ և վճռականորեն հանդես են գալիս նոր պատերազմի նախապատրաստման դեմ։ Նրանք Եվրոպայի բոլոր ժողովուրդների հետ միասին պայքարում են Արևմտյան Գերմանիայում գերմանական միլիտարիզմի վերածնման դեմ, միասնական, խաղաղասեր Գերմանիայի համար, Եվրոպա-



յում և ամբողջ աշխարհում կոլեկտիվ անվտանգություն կազմակերպելու համար։

Ինչպես հայտնի է, Սովետական Միությունն ունի ատոմային և ջրածնային զենք։ Բայց մենք ոչ ոքի չենք սպառնում այդ զենքով։ Միևնույն ժամանակ մենք չենք վախենում ամերիկյան ատոմամոլների սպառնալիքներից։

Սովետական Միությունում, ինչպես և ամբողջ աշխարհում, ջերմ հավանության արժանացավ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը։ Ապրիլի 1-ից Սովետական Միությունում ամենուրեք սկսված է և հաջողությամբ ծավալվում է Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան։ Մայիսի առաջին կեսին Մոսկվայում կայանալու է խաղաղության կողմնակիցների Համամիութենական հինգերորդ կոնֆերենցիան։ Այդ կոնֆերենցիայում նորից կհնչի սովետական ժողովրդի հուժկու ձայնը ի պաշտպանություն խաղաղության, ընդդեմ պատերազմի սպառնալիքի։

Կարելի է չտարակուսել, որ սովետական մարդիկ, մեկ մարդու պես, իրենց ստորագրությունները կդնեն Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ։ Նրանք

իրենց ստորագրությունները կամրապնդեն՝ աշխատանքային նորանոր հաջողություններ ձեռք բերելով ի փառս Հայրենիքի։

Խաղաղության պաշտպանության համար ժողովուրդների ծավալած պայքարը ներկայումս գտնվում է մի նոր, կարևոր էտապում։ Մայիսի 22-ին Հելսինկիում կայանալու է խաղաղասիրական ուժերի ներկայացուցիչների Համաշխարհային ասամբլեան։ Այժմ աշխարհի բոլոր երկրները պատրաստվում են ասամբլեային։ Դա լինելու է խաղաղության ուժերի մի իսկական ստուգատես։

Խաղաղության թշնամիները ուզում են սարսափեցնել ժողովուրդներին, նրանց ներշնչել, թե իբր ատոմային պատերազմն անխուսափելի է։ Բայց ժողովուրդները դրան համաձայն չեն։ Նրանք զզվանքով մերժում և դատապարտում են պատերազմի հրձիգների գործողությունները։ Նրանք թույլ չեն տա, որ սանձազերծվի ատոմային պատերազմը։ Խաղաղության ուժերը ուժեղ են ագրեսիայի ուժերից։ Պատերազմի հրձիգները հարկադրված կլինեն նահանջել, որովհետև ժողովուրդները ավելի ու ավելի պարզորեն են գիտակցում, որ խաղաղության գործը արդար գործ է։ Իսկ արդար գործն անպարտելի է։

---

ԱՇԽԱՐՀԻ ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ

# ՅԱՊՈՆԻԱ

Յապոնիան գտնվում է նույնանուն կղզիների վրա, որոնք մոտ են Սովետական Միությանը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային և Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հեռավոր արևելյան սահմաններին։ Երկրի տերիտորիան կազմում է 380 հազար քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 80 միլիոն մարդ։ Յապոնիայի մայրաքաղաքն է Տոկիոն, որը միաժամանակ երկրի առևտրական և արդյունաբերական խոշոր կենտրոնն է։

Նոր կոնստիտուցիայի համաձայն, որը գործողության մեջ է մտցվել 1947 թվականի մայիսից, Յապոնիան կոնստիտուցիոն միապետություն է։ Կայսրի իշխանությունը փոքր-ինչ սահմանափակված է պառլամենտի կողմից։

Երկրի հիմնական քաղաքական պարտիաներն են՝

Կոմունիստական պարտիան, որը հիմնադրվել է 1922 թվականին։

Դեմոկրատական պարտիան, որը ներկայումս իշխանության գլուխ է անցել և արտահայտում է ազգային բուրժուազիայի շահերը։ Դեմոկրատական պարտիան կողմնակից է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ՍՍՌՄ-ի հետ հարաբերությունների նորմալացման։




*Լիբերալ պարտիան, որը ներկայացնում է յապոնական խոշոր բուրժուազիայի այն որոշակի խմբերի շահերը, որոնք սերտորեն կապված են ամերիկյան մոնոպոլիաների հետ։*

*Բանվորական շարժման մեջ հսկայական դեր է խաղում Յապոնիայի պրոֆմիությունների գլխավոր խորհուրդը՝ դեմոկրատական պրոֆմիությունների այդ հուժկու միավորումը, որն իր շարքերում ունի 3,4 միլիոն մարդ, այսինքն՝ Յապոնիայի բոլոր կազմակերպված բանվորների կեսից ավելին։*

*Յապոնիան զարգացած ինդուստրիալ-ագրարային երկիր է։ Բայց ամերիկյան օկուպացիայի լծի տակ՝ երկրի էկոնոմիկան չտեսնված դժվարություններ է կրում։ ԱՄՆ-ը օգտագործում է օկուպացիոն գլխավոր տերության իր դիրքը՝ երկրի քաղաքական և տնտեսական կյանքի վրա տիրապետություն հաստատելու համար։ Ոտնահարելով պոտսդամյան համաձայնագրերը, ԱՄՆ-ը Յապոնիային պարտադրել է Սան-Ֆրանցիսկոյի սեպարատ «հաշտության պայմանագիրը» և այլ պարտավորագրեր, որոնք ոչ մի առնչություն չունեն խաղաղությունը պահպանելու և Յապոնիայի խաղաղ ու անկախ զարգացումն ապահովելու խնդրի հետ։ Ամերիկյան իմպերիալիստները ձգտում են Յապոնիան դարձնել իրենց ռազմական պլացդարմը և իրենց մոնոպոլիաների շահույթի աղբյուր։ Այդ նպատակով նրանք ամեն կերպ զարկ են տալիս ռազմական արդյունաբերության վերականգնմանն ու զարգացմանը, միաժամանակ խեղդելով խաղաղ արտադրությունը։*

Ամերիկյան օկուպացիայի հետևանքով Յապոնիայում կատարյալ ազգային աղետ է դարձել գործազրկությունը։ Պաշտոնական տվյալներով՝ երկրում կան ավելի քան 10 միլիոն լրիվ և մասնակի գործազուրկներ, որոնք քարշ են տալիս իրենց կիսաքաղց, խղճուկ գոյությունը։ Աճում են գները և հարկերը։ Իսկ յապոնական բանվորների մեծ մասի ռեալ աշխատավարձը նախապատերազմյան աշխատավարձի կեսից էլ պակաս է։

14 միլիոն մարդ, այսինքն՝ բնակչության գրեթե մեկ հինգերորդը տառապում է թոքախտով։ Բժշկական օգնությունն անմատչելի է յապոնական աշխատավորներին։

Յապոնական աշխատավորների ուսերին են ընկած ամերիկյան օկուպացիոն զորքերի պահպանման ծախսերը, որոնք ինը տարում դրա համար արդեն վճարել են ավելի քան 5,5 միլիարդ դոլար։ Ամերիկյան իշխանությունների պահանջով, պետական բյուջեի 70 տոկոսը հատկացվում է ռազմական կարիքների ֆինանսավորմանը։

Յապոնիայի տերիտորիայում ստեղծված է ամերիկյան ավելի քան 700 ռազմական բազա և գտնվում են ամերիկյան զորքերի խոշոր ստորաբաժանումներ։

Յապոնական աշխատավորները ակտիվորեն պայքարի են ելնում իրենց կենսական պահանջները բավարարելու և օկուպացիոն ճնշումը վերացնելու համար։ Արդյունաբերության բոլոր ճյուղերում բանվորների և ծառայողների մասսայական գործադուլները չտեսնված ուժով ցնցում են Յապոնիան։ Ինչպես և նախորդ տա-



րիներին, վճռական պայքար են մղում հանքագործները, որոնք 1954 թվականին անցկացրին հաղթանակով ավարտված մի շարք գործադուլներ։ Բազմիցս պայքարի են ելել երկաթուղայինները, էլեկտրիկները, մետաղագործները, կապավորները, պետական հիմնարկների ծառայողները։

Յապոնիայում լայն թափ է ստացել պայքարը ատոմային և ջրածնային զենքի արգելման համար։ Հայտնի է, որ Յապոնիան դարձավ ամերիկյան ատոմամոլների առաջին զոհը, որոնք 1945 թվականին ատոմային ռումբեր նետեցին Խիրոսիմա և Նագասակի քաղաքների վրա։ Յապոնիային նյութական մեծ վնաս հասցրեց անցյալ տարվա մարտին Խաղաղ օվկիանոսում ամերիկյան ջրածնային ռումբի փորձարկումը։ 29 միլիոն յապոնացիներ իրենց ստորագրություններն են դրել ատոմային և ջրածնային զենքի արգելման պահանջի տակ։

Յապոնական հասարակայնությունն ավելի ու ավելի պնդում է, որ շուտափույթ կերպով նորմալ հարաբերություններ հաստատվեն ՍՍՌՄ-ի ու Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ և զարգացվեն տնտեսական կապերը դրանց միջև, որովհետև դրա մեջ է Յապոնիայի տնտեսական ու քաղաքական ինքնուրույն զարգացման ռեալ հնարավորությունը։ Իրենց հարևանների հետ հարաբերությունները կարգավորելու այդ ձգտումը լայն ուշադրության արժանացավ ինչպես ՍՍՌՄ-ի, այնպես էլ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կողմից։

Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունները համատեղ դեկլարացիայում հայտարարեցին իրենց պատրաստակամությունը՝ նորմալացնել հարաբերությունները Յապոնիայի հետ և փոխադարձ շահավետության հիման վրա առևտրական հարաբերություններ հաստատել նրա հետ, եթե նույնպիսի պատրաստակամություն ցուցաբերվի նաև Յապոնիայի կառավարության կողմից։

Արտահայտելով յապոնական ժողովրդի մեծամասնության ցանկությունը, հայտնի բուրժուական «Ասահի» թերթը վերջերս գրել է. «Ներկայումս յուրաքանչյուր յապոնացի ցանկանում է, որ նորմալացվեն հարաբերությունները ՍՍՌՄ-ի և Կոմունիստական Չինաստանի հետ»։

Յապոնիայի առողջ ուժերը գնալով ավելի են գիտակցում, որ անհրաժեշտ է հաղթահարել եղած պատնեշները, ազատվել ամերիկյան մոնոպոլիաների բռնությունից և պաշտպանել երկրի ազգային անկախությունը։ Միայն այդ կերպ հնարավոր կլինի հասնել իրենց երկրի խաղաղ զարգացմանը, ապահովել արտաքին քաղաքական և տնտեսական կապերը հարևան երկրների հետ։

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ՍԵԱՏՕ — այս անունով է հայտնի այսպես կոչված «Հարավ-Արևելյան Ասիայի համար պայմանագրի կազմակերպությունը»։ ՍԵԱՏՕ բառը կազմված է այդ ռազմական խմբավորման անգլիական անվան առաջին տառերից։

ՍԵԱՏՕ ագրեսիվ բլոկն առաջացել է ռազմական խմբավորումներ կազմակերպելու և ուրիշի տերիտորիաներում ռազմական նոր բազաներ ստեղծելու ամերիկյան քաղաքականության հետևանքով։ 1954 թվականի սեպտեմբերի 8-ին Ֆիլիպինների մայրաքաղաք Մանիլայում ութ պետությունների ներկայացուցիչները՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ, ստորագրեցին «Պայմանագիր Հարավ-Արևելյան Ասիայի պաշտպանության մասին»։ Պայմանագրի մասնակիցների թվում են, ամենից առաջ, այնպիսի գաղութային տերություններ, ինչպես՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները, Անգլիան և Ֆրանսիան։ ՍԵԱՏՕ-ի մեջ են մտնում նաև Ավստրալիան և Նոր Զելանդիան՝ Բրիտանական կայսրության այդ երկրները, որոնց քաղաքական և տնտեսական կախվածությունը գաղութային տերություններից լավ հայտնի է ամենքին։ Ամերիկյան իմպերիալիստներին հաջողվեց ՍԵԱՏՕ-ի մեջ ներգրավել Հարավ-Արևելյան Ասիայի շրջանի միայն երեք երկիր՝ Տայ-

լանդին, Ֆիլիպիններին և Պակիստանին, որոնց ձեռք ու ոտքը կապել են ԱՄՆ-ի հետ կնքված ստրկական համաձայնագրերը։

Հարավ-Արևելյան Ասիան կոմունիզմից «պաշտպանելու» պատրվակով ստեղծված այդ ռազմական նոր խմբավորումը ըստ էության գաղութային տերությունների մի բլոկ է՝ ուղղված Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Ասիայի մյուս խաղաղասեր երկրների դեմ։ Այդ բլոկի պարագլուխ իմպերիալիստները հույս ունեն, թե իրենց կհաջողվի բլոկի օգնությամբ ճնշել Ասիայում անընդհատ ծավալվող ազգային-ազատագրական շարժումը։

Հարավ-Արևելյան Ասիայի երկրների ճնշող մեծամասնությունը հեշտությամբ կռահեցին ՍԵԱՏՕ-ի կազմակերպիչների ագրեսիվ գիտավորությունները։ Այդ ռազմական խմբավորմանը հրաժարվեցին մասնակցել այնպիսի երկրներ ինչպես՝ Հնդկաստանը, Ինդոնեզիան, Բիրման, Ցեյլոնը։ Հարավ-Արևելյան այն երկրների բնակչությունը, որոնք գաղութային տերությունների ճնշման տակ ստորագրեցին Մանիլայում կնքված պայմանագիրը, կազմում է ամբողջ Հարավ-Արևելյան Ասիայի բնակչության մեկ հինգերորդականից պակաս մասը և ասիական բոլոր երկրների ամբողջ բնակչության միայն մեկ տասներորդական մասը։

Մանիլայի պայմանագիրը դեռ ուժի մեջ չի մտել, քանի, որ դրա համար հարկավոր է, որ այն վավերացվի, այսինքն հաստատվի պայմանագիրն ստորագրած բոլոր երկրների պառլամենտների կողմից։ Բայց



ԱՄՆ-ը արդեն փորձում է օգտագործել ՍԵԱՏՕ ագրեսիվ բլոկը՝ Հնդկաչինի գործերին միջամտելու և Ժնևի համաձայնագրերը վիժեցնելու համար։ Այդ ամենը ցույց է տալիս, որ ՍԵԱՏՕ-ն Հարավ-Արևելյան Ասիայում ամերիկյան ագրեսիայի մի գործիք է, որն ուղղված է ասիական ժողովուրդների անվտանգության, ազատության և ազգային անկախության դեմ։

**ԵՕՍ** — Բառացի նշանակում է «Եվրոպական պաշտպանական միավորում», իրականում ամերիկյան իմպերիալիստների կողմից հորինված ռեակցիոն մի պլան, որի միջոցով ԱՄՆ-ը փորձում է վերածնել գերմանական միլիտարիզմը Արևմտյան Գերմանիայում։

ԱՄՆ-ը, կիրառելով «ուժի դիրքերից» ելնող ագրեսիվ քաղաքականություն, ռազմական բլոկներ և խմբավորումներ է ստեղծում դեմոկրատական լագերի խաղաղասեր պետությունների դեմ։

Պայքարելով կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու դեմ, ԱՄՆ-ը փորձում է եվրոպական ժողովուրդների վզին փաթաթել ԵՕՍ-ը, այսպես կոչված «Եվրոպական պաշտպանական միավորումը»։

Ժողովրդական լայն մասսաների ճնշման տակ Ֆրանսիայի Ազգային ժողովը մերժեց ռեակցիոն այդ պլանը, բայց շուտով երևան եկան Արևմտյան Գերմանիան սպառազինելու ագրեսիվ նոր պլաններ, այսպես կոչված լոնդոնյան և փարիզյան համաձայնագրերը։

**ՆԱՏՕ**—Բառացի նշանակում է Հյուսիս-Ատլանտյան բլոկ, իրականում դա ագրեսիվ ռազմական բլոկ է, որը ստեղծել են ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն կառավարողները Սովետական Միության և Ժողովրդական Դեմոկրատիայի երկրների վրա հարձակվելու նպատակով։

Այժմ ամերիկյան և անգլիական իմպերիալիստները ՆԱՏՕ-ի և իրենց կողմից ստեղծված մյուս ագրեսիվ ռազմական բլոկների միջոցով ատոմային պատերազմ են նախապատրաստում աշխարհի խաղաղասեր բոլոր ժողովուրդների դեմ։

**ԱՏՕ**— Բառացի նշանակում է աֆրիկական պայմանագրի կազմակերպություն, այսպես կոչված Աֆրիկայի համար «Պաշտպանական կազմակերպություն», որը հորինել են անգլո-ամերիկյան ռեակցիոն կառավարողները՝ նպատակ ունենալով ամրապնդել իրենց մոնոպոլիստական տիրապետությունները աֆրիկյան մայր ցամաքում և ստեղծել ռազմական պլացդարմ ուղղված խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի դեմ։

Վերջերս Հարավ-աֆրիկյան Միության պաշտպանության մինիստրը հայտարարել է, որ ներկայումս Լոնդոնում ուսումնասիրվում է Աֆրիկայի համար ստեղծվող «պաշտպանական կազմակերպության» նախագիծը։

Այսպիսով, գաղութարարները նախապատրաստում են Աֆրիկան «պաշտպանելու» աֆրիկացիներից, այն աֆրիկացիներից, որոնք այլևս չեն ցանկանում ստրկական աշխատանք կատարել օտարերկրյա զավթիչների, անգլո-ամերիկյան իմպերիալիստների համար։

---

## СОДЕРЖАНИЕ





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել հետևյալ գրքերը.

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը», «Աշխատավորուհիների միջազգային օրը»: *Գինը 10 կ., 12 էջ, տիրաժ 5000։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը»: *Գինը 15 կ., 16 էջ, տիրաժ 5000։*

*Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*— « Իռռացիոնալիզմը փիլիսոփայության և արվեստագիտության մեջ»: *I մաս, գինը 13 ռ., 408 էջ, տիրաժ 3000։*

*Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ*— «Կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ և նրանց հաղթահարման ուղիները»: *Գինը 70 կ., 72 էջ, տիրաժ 5000։*

ԾԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ—. «Սրտաբաց զրույց»: *Գինը 2 ռ. 25 կ., 124 էջ, տիրաժ 5000։*

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 8 1955 г.**

*ՎՖ 09941 Պատվեր 362 Տիրաժ 8250*

---

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8,*
*1955 թ., գինը 50 կոպ.։*